ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ



# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 1 ՀՈՒՆՎԱՐ 1948

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


**Խմբագրության հասցեն.—Երևան, Նալբանդյան 83, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 88—86։**


---

# ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՐՏԱԿԱՆ ԾՐԱԳԻՐԸ

*Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը վերջերս որոշում ընդունեց «Հայաստանի պարտիական կազմակերպություններում իդեոլոգիական աշխատանքն ուժեղացնելու միջոցառումների մասին»։ Այդ որոշումը մեր պարտիական կազմակերպությունների իդեոլոգիական բնագավառի աշխատանքի մարտական ծրագիրն է։ Այն միաժամանակ մեր բոլոր ագիտատորների գործունեության ծրագիրն է, որի կատարման համար պետք է աշխատի ամեն մի ագիտատոր։*

*Կենտրոնական Կոմիտեն իր որոշման մեջ մատնանշում է, որ իդեոլոգիական աշխատանքի մասին ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պատմական որոշումներից հետո անցած մեկ տարվա ընթացքում Հայաստանի պարտիական կազմակերպություններն ուժեղացրել են ուշադրությունը դեպի իդեոլոգիական աշխատանքի հարցերը և բարձրացրել են իրենց կազմակերպող ու ղեկավարող դերը աշխա-*

տավորների կոմունիստական դաստիարա-
կության գործում։

Սակայն Հայաստանի պարտիական կազ-
մակերպության իդեոլոգիական աշխատան-
քում դեռևս ձեռք չի բերված արմատական
բեկում։ Սոցիալիստական կուլտուրայի ակ-
տուալ հարցերը մինչև այժմ էլ դեռ թույլ են
մշակվում։ Մեր իդեոլոգիական ֆրոնտի աշ-
խատողները, ագիտացիոն-պրոպագանդիս-
տական աշխատողները անբավարար պայ-
քար են ծավալում ժամանակակից նեխած
բուրժուական իդեոլոգիայի դեմ։ Դեռևս չի
վերացել խզումը ժամանակակից հարցերից
և միակողմանիորեն տարվելը Հայաստանի
հնագույն շրջանի պատմության ու կուլտու-
րայի հարցերով։ Բոլշևիկյան պարտիակա-
նության սկզբունքները մոռացության տալու
հետևանքով պատմության, փիլիսոփայու-
թյան, գրականության որոշ աշխատություն-
ների մեջ ջնջվել են անցյալի առաջադիմա-
կան և ռեակցիոն շարժումների միջև եղած
հակադրությունները, փորձեր են կատարվել
անցկացնելու բուրժուական-իդեալիստական
վնասակար կոնցեպցիան՝ անցյալում
իբր միասնական, դասակարգերի չբաժանված



հայ ժողովրդի, հայկական միասնական
կուլտուրայի և իդեոլոգիայի մասին։

Ե. Տեր-Մինասյանի «Ոսկեդարի հայ
գրականությունը», Հ. Հարությունյանի «Վար-
դանանց պատերազմը» գրքերի մեջ վերա-
կենդանացվել են բուրժուական-կղերական
կեղծ հերյուրանքները Հայաստանի պատ-
մության 5-րդ դարի մասին իբրև «ոսկե-
դար», Ն. Տոկարսկու «Հին Հայաստանի
ճարտարապետությունը» գրքի մեջ աղա-
վաղված է Անդրկովկասի եղբայրական ժո-
ղովուրդների պատմական անցյալը։ Առանձ-
նապես նկատելի են բուրժուական նացիո-
նալիզմի ռեցիդիվների դրսևորումը մի շարք
գիտական և գրական աշխատություններում,
ինչպես և ստորաքարշությունը Արևմուտքի
բուրժուական գիտության ու կուլտուրայի
առջև։

Իդեոլոգիական աշխատանքի այդ սխալ-
ներն ու թերությունները իրենց արտահայ-
տությունն են գտել նաև մեր ագիտացիոն
աշխատանքի մեջ։ Աշխատավորների շրջա-
նում կատարվող ագիտացիայի ժամանակ
մեր ագիտատորներն անբավարար են քըն-
նադատում ու մերկացնում ժամանակակից
բուրժուական իդեոլոգիայի, մանավանդ

արտասահմանյան հայկական գաղութներում
գործող դաշնակցական պարտիայի ռեակ-
ցիոն իդեոլոգիայի ու գործելակերպի էու-
թյունը։ ՀԿ(բ)Պ Կենտկոմի 29-րդ պլենումի
որոշումը և իդեոլոգիական աշխատանքը
բարելավելու միջոցառումների մասին այս
որոշումը շատ ագիտատորներ դեռ անբավա-
բար են յուրացրել։ Նրանք դեռ մինչև վերջը
չեն ըմբռնել այն կոնկրետ սխալներն ու թե-
րությունները, որոնք թույլ են տրվել իդեոլո-
գիական աշխատանքում և որոնց վերացման
համար պետք է պայքարել բոլոր ուժերով։

ՀԿ(բ)Պ Կենտկոմը բացահայտելով իդեո-
լոգիական աշխատանքի բնագավառում ե-
ղած թերությունններն ու սխալները, նշել է
մի ծավալուն ծրագիր, որի կենսագործումով
կարելի է այդ թերություններն ու սխալները
խսպառ վերացնել և իդեոլոգիական աշխա-
տանքն արմատապես բարելավել։ Այդ ծրա-
գրի կենսագործման համար պետք է աշխա-
տեն մեր բոլոր ագիտատորներն իրենց
պրակտիկ գործունեության ընթացքում։

ՀԿ(բ)Պ Կենտկոմը անհրաժեշտ է համա-
րում պարտիական կազմակերպությունների
ամբողջ աշխատանքի կենտրոնում դնել աշ-
խատավոր մասսաների դաստիարակությունը



կոմունիզմի ոգով, սովետական հայրենա-
սիրության ոգով, անհաշտ պայքար կազմա-
կերպել կապիտալիզմի մնացուկների դեմ
մարդկանց գիտակցության մեջ, հատկապես
նացիոնալիզմի ռեցիդիվների դեմ, պատմու-
թյան ֆալսիֆիկացիայի և անցյալի իդեալա-
կանացման, Արևմուտքի բուրժուական կուլ-
տուրայի առջև ստորաքարշության դեմ։

Այդ նպատակով մեր ագիտատորները
պետք է ավելի՛ խորը սովորեն ու զինվեն
մարքսիզմ-լենինիզմի թեորիայով և այն
լայնորեն պրոպագանդա անեն աշխատա-
վորների մեջ։ Ագիտացիոն աշխատանքը
պետք է հագեցած լինի բոլշևիկյան պար-
տիականության ոգով, պետք է անողոք
պայքար ծավալել գաղափարազրկության ա-
մեն մի արտահայտության դեմ։

Կենտկոմի մշակած ծրագիրը նախատե-
սում է այն հիմնական խնդիրները, որ պետք
է կատարել մարքսիզմ-լենինիզմի պրոպա-
գանդայի, հասարակական գիտությունների,
գրականության, արվեստի, կուլտուր-լուսա-
վորական աշխատանքի, մամուլի և ռադիո
հաղորդումների բնագավառում։ Կենտկոմի
որոշման մի հատուկ բաժին նվիրված է ներ-
գաղթած հայերի մեջ կատարվող գաղափա-

թական-դաստիարակչական աշխատանքին։ Որոշման յուրաքանչյուր բաժնում կետ առ կետ շարադրված է, թե ի՞նչ պետք է անեն Հայաստանի պարտիական կազմակերպությունները և իդեոլոգիական ֆրոնտի աշխատողները, պարզ ձևակերպված են այն հարցերը, որոնք պետք է կազմեն մասսաների մեջ կատարվող ագիտացիոն-քաղաքական աշխատանքի բովանդակությունը։

Հայաստանի պարտիական կազմակերպություններում աշխատող ամեն մի ագիտատոր պետք է Կենտկոմի այդ որոշումը դարձնի իր գործունեության ծրագիրը, իր աշխատանքը կազմակերպի այդ որոշման ցույց տված ուղղությամբ, իսկ ագիտացիայի բովանդակությունը լիովին պետք է համապատասխանի Կենտկոմի որոշման պահանջներին։

Ագիտատորների մարտական խնդիրն է մոբիլիզացնել կոմունիստներին, կոմերիտականներին և անպարտիական ակտիվիստներին՝ իդեոլոգիական աշխատանքը վճռականորեն բարելավելու, Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի այս ծրագրային որոշումը լիովին կենսագործելու համար։

ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ԵՎ ԶԵԿՈՒՅՈՒՄՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ԼԵՆԻՆԻ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԸ ՄԱՐՄՆԱՎՈՐՎԱԾ ԵՆ ԿՅԱՆՔՈՒՄ

(Վ. Ի. Լենինի մահվան 24-րդ տարեդարձի առթիվ)

Քսանչորս տարի առաջ, 1924 թվականի հունվարի 21-ին մահացավ բոլշևիկների փառապանծ պարտիայի կազմակերպիչ և առաջնորդ, աշխարհում առաջին սոցիալիստական պետության հիմնադիր Վլադիմիր Իլյիչ Լենինը։

Կոմունիստական պարտիան, Սովետական Միության աշխատավորները, ամբողջ աշխարհի պրոլետարիատը և ճնշված ու շահագործվող ժողովուրդները անսահման ծանըր կորուստ կրեցին։ Պարտիան կորցրեց իր ստեղծողին և հանճարեղ առաջնորդին, Սովետական պետությունը՝ իր հիմնադրին, միջազգային պրոլետարիատը իր մեծ ուսուցչին։

Լենինի մահից հետո նրա դրոշն իր ձեռքը վերցրեց ու բարձր բռնած առաջ տարավ Լենինի հետևողական աշակերտ, հա-

վաստարիմ զինակից, Լենինի անմահ գործի մեծ շարունակող Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինը — նա, ով տասնամյակների ընթացքում Լենինի հետ միասին կազմակերպել ու կոփել է բոլշևիկների պարտիան, գլխավորել բանվոր դասակարգի քաղաքական պայքարը ցարիզմի և կապիտալիզմի դեմ, կազմակերպել ու գլխավորել Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը մեր երկրում։

Լենինյան սգո օրերին, երբ խոր վիշտը համակել էր բանվոր դասակարգին և մեր երկրի ամբողջ աշխատավորությանը, 1924 թվականի հունվարի 26-ին ՍՍՌՄ Սովետների II համագումարում ընկեր Ստալինը Լենինի դագաղի առաջ պարտիայի անունից մեծ երդում տվեց՝ մինչև վերջը հավատարիմ մնալ Լենինի պատգամներին և անշեղորեն մեր երկիրը տանել լենինյան ուղիով։

Առաջնորդի սրբազան երդումը դարձավ մեր հոյակապ աշխատանքների մեծագույն ծրագիրը։ Ընկեր Ստալինի երդումը մոբիլիզացրեց մեր երկրի բանվոր դասակարգին և բոլոր աշխատավորներին, է՛լ ավելի համախմբեց նրանց Լենինի-Ստալինի փառապանծ պարտիայի շուրջը։

Լենինի ստեղծած մեր փառապանծ բոլ-



շևիկյան պարտիան մեծ առաջնորդ ընկեր Ստալինի ղեկավարությամբ ահա արդեն 24 տարի պայքարում է Լենինի մեծ պատգամների կենսագործման համար, ամրապնդում է Սովետական պետության ուժն ու հզորությունը։ Այդ ժամանակաշրջանում մեր երկիրը դաժան փորձությունների տարիներ ապրեց։ Սակայն շնորհիվ բոլշևիկյան պարտիայի ճիշտ քաղաքականության և ընկեր Ստալինի իմաստուն ղեկավարության, Սովետական Միության աշխատավորները հաղթահարեցին մեծ պայքարի ճանապարհին եղած բոլոր դժվարությունները և անշեղորեն ընթանում են Լենինի նշած ուղիով։ Լենինի անմահ գաղափարները ընկեր Ստալինի գլխավորությամբ կենսագործվում են մեր երկրում։

***

Մեծ Լենինը պատգամ էր թողել հետամնաց, միջնադարյան տեխնիկա ունեցող մեր երկիրն արմատապես վերափոխել և դուրս բերել սոցիալիստական զարգացման ուղին։ Լենինի գործի հանճարեղ շարունակող ընկեր Ստալինի գլխավորությամբ սո-

վետական ժողովուրդը պատմական ամենակարճ ժամանակամիջոցում հաջողությամբ իրականացրեց երկրի սոցիալիստական ինդուստրիալիզացիայի և գյուղատնտեսության կոլեկտիվացման լենինյան պլանը։

Երկրի ինդուստրիալիզացիայի լենինյան-ստալինյան քաղաքականությունն արմատապես փոխեց մեր երկրի դեմքը, որի շնորհիվ արդեն 1940 թվականին ՍՍՌՄ-ում արտադրվում էր 15 միլիոն տոննա չուգուն — մոտ չորս անգամ ավելի, քան 1913 թվականին, ավելի քան 18 միլիոն տոննա պողպատ — չորս և կես անգամ ավելի, քան 1913 թվականին, 166 միլիոն տոննա ածուխ — հինգ և կես անգամ ավելի, քան 1913 թվականին։

Այն, ինչի մասին երազում էր Լենինը, այն, ինչի անընդհատ ձգտում էր Լենինը — կենսագործվեց։ ՍՍՌՄ-ը դարձավ հզոր ինդուստրիալ պետություն, արդյունաբերության մի շարք կարևոր ճյուղերում գրավելով առաջին տեղերը Եվրոպայում և ամբողջ աշխարհում։

Գյուղատնտեսության կոլեկտիվացումը, հետամնաց մանր գյուղացիական տնտեսությունների վերածումը մեքենայացված խո-



շոր կոլեկտիվ տնտեսությունների, սովխոզների ու մեքենա-տրակտորային կայանների ստեղծումը ամենախոշոր հեղաշրջումն էր սովետական հասարակակարգի կյանքում։ «Այդ ռևոլյուցիոն ամենախոր հեղաշրջում էր, մի թռիչք հասարակության հին որակական կացությունից դեպի նոր որակական կացությունը, մի հեղաշրջում, որն իր հետևանքներով 1917 թվականի հոկտեմբերի ռևոլյուցիոն հեղաշրջմանը հավասար նշանակություն ուներ», — ասված է «Համ. Կ(բ)Պ Պատմության համառոտ դասընթաց»-ում։

Գյուղատնտեսության կոլեկտիվացման լենինյան պլանի կենսագործումը վերակառուցեց սովետական գյուղը։ Հետամնաց տեխնիկա ունեցող 24—25 միլիոն մանր անհատական գյուղացիական տնտեսությունների փոխարեն, աճեցին միավորված կոլեկտիվ տնտեսություններ՝ առաջնակարգ տեխնիկական բազայի, ագրոտեխնիկական գիտության վերջին նվաճումների հիման վրա։

Լենինը ժամանակին խոսում էր 100 հազար տրակտորի մասին, որը իբրև հզոր լծակ կարողանար մեր ողջ գյուղատնտեսու-

թյունը շրջել դեպի կոմունիզմի ուղին։ Երկրի սոցիալիստական ինդուստրիալիզացիայի շնորհիվ արդեն 1940 թվականին մեր կոլխոզային դաշտերում աշխատում էին մոտ կես միլիոն առաջնակարգ տրակտոր, ավելի քան 150 հազար կոմբայն, մոտ 200 հազար բեռնատար ավտոմոբիլ և հարյուր հազարավոր այլ գյուղատնտեսական մեքենաներ։

Գյուղի սոցիալիստական վերակառուցման շնորհիվ ընդմիշտ վերացվեց գյուղում աղքատությունն ու անապահովությունը։ Արդեն 1940 թվականին մեր սոցիալիստական գյուղատնտեսությունը տվեց ավելի քան 38 միլիոն տոննա ապրանքային հացահատիկ — մոտ երկու անգամ ավելի, քան 1913 թվականին, բամբակի հումքի բերքը երեք և կես անգամ գերազանցեց 1913 թվականի մակարդակից։

Սոցիալիզմի կառուցման լենինյան հոյակապ պլանի կենսագործումը, նախապատերազմյան երեք հնգամյակների իրականացումը մեր երկիրը դարձրին հզոր սոցիալիստական տերություն։ «Դա թռիչք էր, — ասում է ընկեր Ստալինը, — որի օգնությամբ մեր Հայրենիքը հետամնաց երկրից վերածվեց



առաջավոր, ագրարայինից՝ ինդուստրիալ երկրի»։

Այս մեծագույն նվաճումները սովետական ժողովուրդը ձեռք բերեց շնորհիվ մեր բոլշևիկյան փառապանծ պարտիայի իմաստուն քաղաքականության, մեծ Ստալինի գլխավորությամբ, որը սովետական ժողովրդին անշեղորեն առաջնորդում է Լենինի պատգամների կենսագործման ուղիով։

Երկրի սոցիալիստական ինդուստրիալիզացիան և գյուղատնտեսության կոլեկտիվացումը հանդիսացան այն հիմնական բազան, որի շնորհիվ սովետական ժողովուրդը, հանճարեղ առաջնորդ ընկեր Ստալինի ղեկավարությամբ, մեծագույն հաղթանակ տարավ գերմանա-ֆաշիստական զավթիչների և ճապոնական իմպերիալիստների դեմ մղած Հայրենական Մեծ պատերազմում։

***

Սովետական Միության ժողովուրդները խաղաղ ստեղծագործական աշխատանքի տարիներին հաջողությամբ իրագործելով մեր երկրի ինդուստրիալիզացիայի և գյուղատնտեսության կոլեկտիվացման լենինյան-ստալինյան հանճարեղ պլանը,

ապահովեցին Հայրենական Մեծ պատերազմում ձեռք բերած պատմական հաղթանակը։ Այդ հաղթանակի վճռական գործոնը հանդիսացավ Սովետական Միության բոլոր ժողովուրդների մեծ բարեկամությունը, նրանց բարոյական-քաղաքական անխորտակելի միասնությունը, ջերմ հայրենասիրությունը։

«Թիկունքում սովետական մարդկանց աշխատանքային սխրագործությունների, ինչպես նաև ռազմաճակատում մեր ռազմիկների մարտական անթառամ սխրագործությունների աղբյուրը սովետական ջերմ և կենսատու հայրենասիրությունն է»,— ասաց ընկեր Ստալինը։

Լենինի մեծ և անպարտելի դրոշով, Լենինի գործի ամենահավատարիմ շարունակող ընկեր Ստալինի գլխավորությամբ ռազմաճակատի և թիկունքի մեր մարտիկները հերոսության և աշխատանքային սխրագործության անօրինակ հրաշքներ ցույց տվին։

Հայրենական պատերազմի ժամանակ Սովետական Միության ժողովուրդներն ավելի սերտորեն համախմբվեցին Լենինի-Ստալինի փառապանծ պարտիայի շուրջը։ Մեր երկրի ժողովուրդների բարեկամությունն արյամբ



ամրապնդվեց Հայրենական պատերազմի ճակատներում։ Մեծ Ստալինի կոչով իրենց սրբազան Հայրենիքը պաշտպանելու համար մեկ մարդու պես ոտքի ելան Սովետական Միության բոլոր ժողովուրդները։ Մոսկվայի, Լենինգրադի, Սևաստոպոլի, Կիևի, Մինսկի համար, Կովկասյան նախալեռներում գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ իրենց ավագ եղբոր՝ ռուս ժողովրդի գլխավորությամբ մարտնչում էին մեծ Միության բոլոր ժողովուրդները։

Հայրենական պատերազմում մեկ անգամ ևս հաստատվեց մեծ Լենինի խոսքերի իրավացիությունն այն ժողովրդի անպարտելիության մասին, որն իշխանությունը վերցրել է իր ձեռքը։ «Երբեք չեն հաղթի այն ժողովրդին, որի մեջ բանվորների և գյուղացիների մեծամասնությունը իմացել, զգացել և տեսել է, որ նրանք պաշտպանում են իրենց, սովետական իշխանությունը՝ աշխատավորների իշխանությունը, որ պաշտպանում են այն գործը, որի հաղթանակը նրանց ու նրանց երեխաներին կապահովի կուլտուրայի բոլոր բարիքներից, մարդկային աշխատանքի բոլոր նվաճումներից օգտվելու հնարավորությունը» (Լենին)։

Լենինը անսահման հավատում էր մեր երկրի բանվորների և գյուղացիների ստեղծագործական ուժին, անչափ վստահում էր նրանց։ Լենինը մեր պարտիային սովորեցնում էր մշտական և ամուր կապ պահպանել ժողովրդի հետ։

«Ես չգիտեմ, — ասում է Ստալինը, — մեկ այլ ռևոլյուցիոների, որը այնքան խոր կերպով հավատար պրոլետարիատի ստեղծագործական ուժերին և նրա դասակարգային բնազդի ռևոլյուցիոն նպատակահարմարությանը, ինչպես Լենինը»։

Հայրենական Մեծ պատերազմն ամբողջ ուժով հաստատեց Լենինի այն հայտնի ցուցումը, թե պատերազմը ամեն մի ժողովրդի նյութական և հոգևոր բոլոր ուժերի բազմակողմանի քննությունն է։ Պատերազմի ընթացքում Սովետական պետությունը բռնեց մեծագույն քննությունը և ցույց տվեց իր գերազանցությունը գոյություն ունեցող բոլոր պետական ձևերի համեմատությամբ։ Պատերազմը ցույց տվեց, որ սովետական հասարակակարգը ոչ միայն երկրի տնտեսական ու կուլտուրական վերելքի կազմակերպման լավագույն ձևն է՝ խաղաղ շինարարության տարիներին, այլև պատերազմի ժամանակ



թշնամուն հակահարված տալու համար ժողովրդի բոլոր ուժերը մոբիլիզացնելու լավագույն ձևն է։

Սովետական պետության, սովետական հասարակակարգի փայլուն հաղթանակը Հայրենական պատերազմում, հաղթանակն է Լենինի անմահ իդեաների, որ մեծագույն վարպետությամբ իրականացնում է Լենինի գործի հանճարեղ շարունակող Իոսիֆ Վիսարիոնովիչ Ստալինը։

Մեծ և անսպառ է սովետական ժողովրդի սերն ու նվիրվածությունը իր հարազատ պարտիային, Լենինի-Ստալինի պարտիային։ Աշխատավորների այդ սերն ու վստահությունը դեպի Լենինի-Ստալինի պարտիան, մասսաների մեջ բոլշևիկյան պարտիայի բացառիկ հեղինակությունը ծագել և զարգացել են ժողովրդի ազատության ու երջանկության համար պարտիայի կողմից մղվող երկարամյա պայքարի ընթացքում։

Սովետական ժողովրդի վստահությունն ու սերը Լենինի-Ստալինի պարտիայի նկատմամբ, իր ցայտուն արտահայտությունը գտավ Հայրենական պատերազմի տարիներին պարտիայի աճման մեջ։ Եթե պատերազմից առաջ պարտիայի մեջ կար 3 միլիոն 800 հազար անդամ և թեկնածու, ապա

այժմ պարտիայի անդամների և թեկնածուների թիվը հասնում է 6 միլիոն 300 հազարի։

Մեր պարտիայի ուժը, սովետական մարդկանց ուժը այն է, որ նրանք պայքարում, աշխատում և իրենց կյանքը կառուցում են Իլյիչի նման։

Ընկեր Ստալինն ասում է. «Հիշեցե՛ք, սիրեցե՛ք, ուսումնասիրեցե՛ք Իլյիչին, մեր ուսուցչին, մեր առաջնորդին... Նոր կյանքը, նոր կենցաղը, նոր կուլտուրան կառուցեցե՛ք Իլյիչի նման»։

Լենինը նոր աշխարհ կերտող մարդկանցից պահանջում էր գիտակցականության և կուլտուրականության բարձր աստիճան։ Այս կապակցությամբ Լենինը առաջնակարգ նշանակություն էր տալիս աշխատավորներին կոմունիստական գիտակցականության ոգով դաստիարակելուն։

Լենինն ասում էր. «Մենք մարքսիստական ծրագրով դաստիարակեցինք պրոլետարիատի պարտիան, այդպես էլ պետք է դաստիարակել այն տասնյակ միլիոնավոր աշխատավորներին, որոնք կան մեզ մոտ»։

Մեր պարտիան հանճարեղ առաջնորդ ընկեր Ստալինի ղեկավարությամբ իրագործելով իր ուսուցչի այդ ցուցումը, հսկայական



աշխատանք է կատարել սովետական մարդկանց մեջ կոմունիստական գիտակցականությունը զարգացնելու, աշխատավորների գիտակցության միջից կապիտալիզմի մնացուկները վերացնելու ուղղությամբ։ Ժողովրդի կոմունիստական դաստիարակության ամբողջ աշխատանքը բոլշևիկյան պարտիան կազմակերպում է լենինյան գաղափարների ոգով, լենինիզմի հիման վրա։

Եվ այդ աշխատանքը տվել է իր դրական արդյունքները։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 30-ամյակին Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում տված իր զեկուցման մեջ ընկ. Մոլոտովն ասաց.

«Պետք է ընդունել, որ մեր ռևոլյուցիայի կարևորագույն նվաճումը մարդկանց, որպես սովետական հայրենասերների, նոր հոգևոր նկարագիրն է ու գաղափարական աճը։ Այս բանը վերաբերում է սովետական բոլոր ժողովուրդներին, ինչպես քաղաքին, այնպես էլ գյուղին, ինչպես ֆիզիկական աշխատանքի մարդկանց, այնպես էլ մտավոր աշխատանքի մարդկանց։ Այդ է իրոք Հոկտեմբերյան Ռևոլյուցիայի մեծագույն հաջողությունը, որը համաշխարհային պատմական նշանակություն ունի։ Այժմ սովետական մարդիկ

այն չեն, ինչ որ էին երեսուն տարի առաջ։

Իր դաստիարակչական աշխատանքում պարտիան ղեկավարվում է մեծ առաջնորդ ընկեր Ստալինի այն ցուցումով, որ սովետական մարդիկ միշտ պետք է իրենց առաջ ունենան մեծ Լենինի անմահ կերպարը և աշխատեն Լենինի նման։ Աշխատել Լենինի նըման, նշանակում է անձնվիրաբար սիրել սոցիալիստական Հայրենիքը, լինել սովետական բոցաշունչ հայրենասեր, բուռն եռանդով աշխատել Հայրենիքի բարօրության համար, պատրաստ նրան պաշտպանելու թշնամիներից, անվեհեր լինել մարտում և անողոք դեպի ժողովրդի թշնամիները, պահպանել և ամրապնդել Սովետական Միության ժողովուրդների մեծ բարեկամությունը։

***

Մեր պետության հիմնադիր մեծ Լենինի և նրա գործի հանճարեղ շարունակող ընկեր Ստալինի պայծառ անունները հանդիսանում են ժողովրդի բարոյական-քաղաքական միասնության կենդանի մարմնացումը։

Մեր երկրի ժողովուրդների եղբայրական համագործակցությունը նոր ուժով դրսևորվում է հետպատերազմյան խաղաղ ստեղ-



ծագործական աշխատանքի ժամանակաշրջանում, երբ սովետական ժողովուրդը միահամուռ ջանքերով ավերակներից բարձրացնում է պատերազմի հետևանքով քայքայված գործարաններն ու ֆաբրիկաները, էլեկտրակայանները, վերականգնում է քաղաքներն ու գյուղերը։

Լենինի հանճարով ստեղծված մեր բազմազգ Սովետական պետությունը պատերազմի բոլոր փորձություններից դուրս եկավ ամուր և անխորտակելի։ Պատերազմի հաղթական ավարտումից հետո Սովետական Միությունը թևակոխեց իր զարգացման մի նոր ժամանակաշրջան— հետպատերազմյան ստալինյան հնգամյակի կատարման համար մղվող պայքարի ժամանակաշրջանը, երբ սովետական ժողովրդի առջև խնդիր է դրված ամենակարճ ժամանակամիջոցում բուժել թշնամու պատճառած վերքերը և վերականգնել ժողովրդական տնտեսության նախապատերազմյան մակարդակը, ամենամոտիկ ժամանակում զգալի չափով անցնել այդ մակարդակից, բարձրացնել ժողովրդի նյութական բարեկեցությունը և է՛լ ավելի ամրապընդել Սովետական պետության ռազմատնտեսական հզորությունը։

Նոր հնգամյակի վերջում, 1950 թվականին

Սովետական Միությունը պետք է արտադրի 19,5 միլիոն տոննա չուգուն, 25,4 միլիոն տոննա պողպատ, 250 միլիոն տոննա ածուխ, 35,4 միլիոն տոննա նավթ, 2200 շոգեքարշ, 146 հազար ապրանքատար և 2600 մարդատար վագոն, 428 հազար բեռնատար ավտոմեքենա։

Հնգամյա պլանով նախատեսվում է գյուղատնտեսական մթերքների և լայն սպառման ապրանքների արտադրության մեծ վերելք, այն հաշվով, որպեսզի ապահովվի սովետական ժողովրդի հետագա նյութական բարեկեցությունը։

Ստալինյան նոր հնգամյակի հոյակապ խնդիրները ժողովրդական տնտեսության վերականգնման և հետագա զարգացման ասպարեզում, սովետական ժողովրդին ոգեշնչեցին նորանոր հերոսական ջանքերի և աշխատանքային սխրագործությունների։ Ամբողջ երկիրն այժմ պայքարում է նոր հնգամյակը ոչ միայն կատարելու, այլև գերակատարելու բուռն ձգտումով։ Հնգամյակի ինչպես առաջին, այնպես էլ երկրորդ տարին՝ 1947 թվականը անցան աշխատանքային հզոր վերելքի պայմաններում, նշանավորվեցին արտադրական պլանների կատարումով ու գերակատարումով։



Լենինի քաղաքի աշխատավորների հայրենասիրական կոչը՝ հնգամյակը չորս տարում կատարելու մասին, ջերմորեն և միահամուռ կերպով պաշտպանեցին մեր երկրի բոլոր աշխատավորները։ «Հնգամյակը — չո՛րս տարում» լոզունգը հնչում է Սովետական Միության բոլոր ժողովուրդների լեզուներով։

Պանծալի լենինգրադցիների հայրենասիրական նախաձեռնությունը սոցիալիստական մրցության նոր հզոր ալիք առաջացրեց ամբողջ երկրում, որի հրաշալի արդյունքը եղավ այն, որ սոցիալիստական արդյունաբերությունը 1947 թվականի տնտեսական տարին փակեց պլանների զգալի գերակատարումով։ Արդեն 1947 թվականի հոկտեմբեր ամսին ՍՍՌՄ ամբողջ խոշոր արդյունաբերության արտադրանքը հասավ նախապատերազմյան մակարդակին։

Կենսագործելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի պատմական որոշումը՝ «Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին», մեր կոլխոզային գյուղացիությունը անցած տարվա ընթացքում վիթխարի աշխատանք կատարեց սոցիալիստական գյուղատնտեսության նոր հուժկու վերելք ստեղծելու համար։ Հացահատիկային կուլ-

տուրաների համախառն բերքը 1947 թվականին 58 տոկոսով բարձր եղավ նախորդ տարվա համեմատությամբ։

Ստալինյան նոր հնգամյակի հաջող կենսագործման լավագույն արդյունքն է մեր երկրում պարենային և արդյունաբերական ապրանքների հարաճուն ռեզերվների ստեղծումը, որը հնարավորություն տվեց 1947 թվականի դեկտեմբերին վերացնելու քարտային սիստեմը, անցնելու սովետական ազատ ծավալուն կուլտուրական առևտրի և կիրառելու դրամական ռեֆորմը՝ կենսամթերքների ու արդյունաբերական ապրանքների գների իջեցումով և ռեալ աշխատավարձի բարձրացումով, որը սովետական էկոնոմիկայի ուժի ու ամրության փայլուն ապացույց է և հաստատում է այն փաստը, որ մեր երկրի տընտեսության զարգացումը իրոք ծառայում է Սովետական Միության աշխատավորների կենսամակարդակի անշեղ բարձրացմանը։

Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունները, որ տեղի ունեցան վերջերս, կրկին անգամ ցուցադրեցին ՍՍՌՄ ժողովուրդների անխորտակելի բարոյական-քաղաքական միասնությունը, նրանց սերտ համախմբվածությունը Լենին-Ստալինի փառապանծ պարտիայի շուրջը,



պարտիայի և ժողովրդի մեծ առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը։

***

Սովետական Միության հաղթանակը Հայրենական պատերազմում և ՍՍՌՄ-ի ներքին ուժերի ամրապնդումը խիստ բարձրացրին նրա միջազգային հեղինակությունը։ Այն ժամանակ, երբ մեզ մոտ հետպատերազմյան շրջանում անշեղ վերելք է տեղի ունենում, կապիտալիստական երկրներում աճում է ինֆլյացիան, բարձրանում են ապրանքների գները, ընկնում է դրամի գնողունակությունը, իջնում է աշխատավորների ռեալ աշխատավարձը, անընդհատ աճում է գործազրկությունը։ Մեզ մոտ, ՍՍՌՄ-ում չկա՛ և չի՛ լինի գործազրկություն։ Սովետական մարդը վստահ նայում է իր ապագային, որովհետև նա ինքն է իր բախտի տերը, ինքն է իր երկրի տնօրենը։

«...Սոցիալիզմի հիմքը,— ասում է ընկ. Մոլոտովը, — Սովետական Միության մեջ ամրանում է օրըստօրե, իսկ կապիտալիստական հասարակության հենակները Եվրոպայում վաղուց արդեն ամբողջովին փտել են»։

Կապիտալիստական մի շարք երկրներում կառավարող շրջանները փոխանակ ամրա-

պնդելու խաղաղությունը, վերջնականապես արմատախիլ անելու ֆաշիզմը, ամերիկյան իմպերիալիստների ու եվրոպական ռեակցիոներների գլխավորությամբ ձգտում են նոր պատերազմ հրահրել դեմոկրատական երկրների և Սովետական Միության դեմ։

Բայց դա կլինի նրանց կողմից վտանգավոր մի խաղ կապիտալիզմի ճակատագրի համար։ Սովետական Միության գլխավորությամբ հակաիմպերիալիստական դեմոկրատական ճամբարի ուժերը օրեց-օր ավելի ու ավելի են ուժեղանում և համախմբվում, պայքարելով իմպերիալիստների ավանտյուրիստական պլանների դեմ։

Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ Սովետական Միության տարած պատմական հաղթանակների մեջ կապիտալիստական աշխարհի աշխատավորները տեսնում են իրենց մոտալուտ ազատագրումը շահագործումից և ճնշումից։ «Իմպերիալիստների ջղագար ճիգերը, — ասում է ընկ. Մոլոտովը,— որոնց ոտքի տակ հողը երերում է, չեն փրկի կապիտալիզմը մոտալուտ կործանումից։ Մենք ապրում ենք այնպիսի դարում, երբ բոլոր ուղիները տանում են դեպի կոմունիզմը»։



***

Քանիչորս տարի է անցել այն օրից, երբ դադարեց բաբախելուց մեծ Լենինի սիրտը։ Քանիչորս տարի Սովետական ժողովուրդը առաջ է ընթանում առանց Լենինի, Ստալինի գլխավորությամբ։ Մեծ Ստալինը մեզ տանում է Լենինի նշած ուղիով։ Լենինի կերպարը մարմնացած է ընկեր Ստալինի մեջ։ Ահա թե ինչու մեր ժողովուրդն ասում է Ստալինը Լենինն է այսօր։

«Մենք ընթանում ենք Ստալինի հետ այնպես, ինչպես Լենինի հետ, խոսում ենք Ստալինի հետ, ինչպես Լենինի հետ, նա գիտե մեր բոլոր մտքերն ու խոհերը, իր ամբողջ կյանքի ընթացքում նա մեր մասին է հոգում»,— ասված է ռուսական ժողովրդական սամոնքներից մեկում։

Ընկեր Ստալինի մասին, որպես Լենինի գործի հանճարեղ շարունակողի, վառ և գունեղ կերպով արտահայտվել է Ս. Մ. Կիրովը.

«Դժվար է պատկերացնել այն հսկայի կերպարը, որպիսին հանդիսանում է Ստալինը։ Վերջին տարիների ընթացքում, այն ժամանակվանից ի վեր, երբ մենք աշխատում ենք առանց Լենինի, մենք չգիտենք

մեր աշխատանքում ոչ մի շրջադարձ, թեև թե շատ խոշոր ոչ մի ձեռնարկում, լոզունգ, ուղղություն մեր քաղաքականության մեջ, որի հեղինակը լիներ ոչ թե ընկեր Ստալինը, այլ՝ մեկ ուրիշը: Ամբողջ հիմնական աշխատանքը— այդ պետք է գիտենա պարտիան—կատարվում է ընկեր Ստալինի ցուցումներով, նրա նախաձեռնությամբ ու ղեկավարությամբ: *Միջազգային քաղաքականության ամենամեծ հարցերը որոշվում են նրա ցուցումով, և ոչ միայն այդ մեծ հարցերը, այլ թվում է թե երրորդական և նույնիսկ տասներորդական հարցերը հետաքրքրում են նրան, եթե դրանք վերաբերում են մեր երկրի բանվորներին, գյուղացիներին և բոլոր աշխատավորներին...* Այդ մարդու զորեղ կամքը, վիթխարի կազմակերպական տաղանդը պարտիայի համար ապահովում է սոցիալիզմի հաղթական կառուցման հետ կապված պատմական մեծ շրջադարձերի ժամանակին կատարումը»:

*Լենինի դրոշով, Ստալինի առաջնորդությամբ սովետական բազմազգ ժողովուրդը, իր ապագայի նկատմամբ վստահ, ընթանում է դեպի կոմունիզմի հաղթանակը մեր երկրում:*

— ❂ —

ՆԱՐԴԻՍ ԲԱՐՁՐԱՁԱՅՆ

# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԿՅԱՆՔԻ ՎԵՐՋԻՆ ՏԱՐԻՆԵՐԸ

*1921 թվականի վերջերին Վլադիմիր Իլյիչը հիվանդացավ: Պարտիայի, բանվորական շարժման և Սովետական պետության ղեկավարման այն հսկայական աշխատանքը, որ կատարում էր Լենինը, աննկատելիորեն թուլացնում էին նրա ուժերը: Երկարամյա ընդհատակյա աշխատանքը, սիբիրյան աքսորը և տարագրությունը ցարական կառավարության օրով, շատ դժվարություններ ու զրկանքներ էին պատճառել Լենինին: Իսկ այնուհետև լարված աշխատանքը սովետական իշխանության առաջին տարիներին, ապա 1918 թվականի օգոստոսին մահափորձի հետևանքով ստացած վերքը,— այս բոլորը միասին խիստ քայքայել էին Լենինի առողջությունը:*

*1922 թվականի մայիսին Լենինի վիճակն զգալիորեն վատացավ: Այդ ժամանակ Լենինը գտնվում էր Մոսկվայից ոչ հեռու, Գորկայում, ուր նա փոխադրվել էր բժիշկների խորհրդով: Մայիսի վերջերին սկսվեցին սուր*

նոպաները, որոնք հաճախ ժամանակի կաթվածահարության։ Լենինը առժամանակ զրկվեց աջ ոտքն ու աջ ձեռքը շարժելու ընդունակությունից։ Հունիսի կեսերին Վլադիմիր Իլյիչի առողջությունը որոշ չափով բարելավվեց։ Բժիշկները նրան թույլ տվին ընդունել մոտիկ ընկերներին, սակայն պայմանով, որ չզբաղվեն գործարար խոսակցությամբ։

Լենինի հիվանդության ժամանակ նրան հաճախ այցելում էր Ստալինը, որը ղեկավարում էր պարտիայի և Սովետական պետության աշխատանքը։ Լենինն իր մոտ էր կանչում ընկեր Ստալինին, գործերի դրության մասին զրուցելու, հրատապ հարցերը միասին քննարկելու համար։

Ահա թե ընկեր Ստալինն ինչ է գրում Գորկայում տեղի ունեցած այդպիսի հանդիպումներից մեկի մասին.

«Մեկ և կես ամսվա ընդմիջումից հետո հուլիսի վերջին մեր առաջին տեսակցության ժամանակ ընկեր Լենինն ինձ վրա թողեց հին մարտիկի տպավորություն, որը հնարավորություն էր ստացել հանգստանալու անընդհատ, հոգնեցուցիչ մարտերից հետո և թարմացել էր հանգստից։ Թարմացած էր, բայց գերհոգնածության նշաններով։



— «Ինձ չի՞ թույլատրվում թերթեր կարդալ,— հեգնական կատակով նկատեց ընկեր Լենինը,— ինձ չի՞ թույլատրվում խոսել քաղաքականության մասին, ես զգուշանում եմ սեղանի վրա ընկած յուրաքանչյուր թղթի կտորից, վախենալով թե հանկարծ դա կարող է թերթ լինել,— և ահա ձեզ կարգապահության խախտում»։

Ես ծիծաղում եմ և գովում ընկեր Լենինի կարգապահությունը։ Միևնույն ժամանակ ծիծաղում ենք բժիշկների վրա, որոնք չեն կարողանում հասկանալ, որ տեսակցության եկած պրոֆեսիոնալ քաղաքականագետները չեն կարող քաղաքականության մասին չխոսել։

Մեզ զարմացնում էր ընկեր Լենինի հարցասիրությունը և աշխատանքի անհաղթահարելի ձգտումը։ Երևում է որ աշխատանքին կարոտել էր»։

Վլադիմիր Իլյիչի առողջությունը արագ վերականգնվում էր։ 1922 թվականի հոկտեմբերի 2-ին Լենինը Գորկայից փոխադրվեց Մոսկվա և անցավ աշխատանքի։ Բոլոր աշխատավորներն ուրախանում էին, որ Լենինը նորից կարող է հանդես գալ, խոսել, գրել, ներկա գտնվել ժողովներին, ղեկավարել երկիրը։

1922 թվականի նոյեմբերի 13-ին Լենինը Կոմունիստական Ինտերնացիոնալի 6-րդ կոնգրեսում հանդես եկավ զեկուցումով։ Զեկուցման նյութն էր՝ «Ռուսական ռևոլյուցիայի հինգ տարին և համաշխարհային ռևոլյուցիայի հեռանկարները»։ Լենինը զեկուցեց գերմաներեն լեզվով։ Զեկուցումը, որ տևեց մոտ մեկ ժամ, Կոնգրեսը լսեց մեծագույն ուշադրությամբ։ Բայց զեկուցելը Լենինի համար արդեն դժվար գործ էր—հիվանդությունն զգալ էր տալիս իրեն։

1922 թվականի նոյեմբերի 20-ին Լենինը Մոսկվայի Սովետի պլենումում հանդես եկավ ճառով Սովետական Ռուսաստանի արտաքին և ներքին քաղաքականության մասին։ Դա Վլադիմիր Իլյիչի վերջին ելույթն էր երկրի առաջ։

Ամբողջ պարտիան, բոլոր աշխատավորները Լենինի հիվանդությունն ապրում էին իբրև մեծ վիշտ։ Բայց ծանր հիվանդ վիճակումն էլ Լենինը չէր դադարեցնում աշխատանքը հօգուտ ռևոլյուցիայի, ի բարօրություն սոցիալիստական Հայրենիքի, որին նա նվիրեց իր բոլոր ուժերը, իր ամբողջ կյանքը։

1923 թվականի առաջին երկու ամսում Իլյիչի առողջության վիճակը մի փոքր բարելավվեց։ Այդ ժամանակ Լենինը թելադրեց մի



շարք կարևոր հոդվածներ— «Էջեր օրագրից», «Կոոպերացիայի մասին», «Ի՞նչպես վերակառուցել Բանգյուղտեսչությունը», «Մեր ռևոլյուցիայի մասին», «Լավ է քիչ՝ բայց լավ»։

Իր այդ հոդվածների մեջ Լենինը բացառիկ ուժով կրկին անգամ ընդգծում էր մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորությունը։ Այդ հոդվածները փաստաթղթեր են, որոնք երկար տարիներ ուղղություն էին տալիս մեր պարտիայի աշխատանքին։

1923 թվականի մարտին Լենինի առողջությունը նորից վատացավ։ Նա չկարողացավ մասնակցել նույն թվականի ապրիլին տեղի ունեցած՝ պարտիայի 12-րդ համագումարի աշխատանքներին։ Բայց հուլիսի երկրորդ կեսից Վլադիմիր Իլյիչի առողջությունը զգալիորեն բարելավվեց։ Ուրախալի լուրն արագությամբ տարածվեց ամբողջ երկրում, ամբողջ աշխարհում— Լենինն առողջանո՜ւմ է։ Չէր անցնում ոչ մի համագումար, ոչ մի կոնֆերենցիա, որտեղ չտրվեին հազարավոր հարցեր Լենինի առողջության մասին։

Լենինը միշտ իր առողջությանը վերաբերվում էր ոչ թե անձնական, այլ հասարակական շահերի տեսակետից։ Նա ամենից առաջ մտածում էր ոչ թե իր մասին, այլ պար-

տիայի մասին։ Լենինին բուժող բժիշկը
պատմում է.
«Ընկեր Լենինը գտնվում էր կյանքի ու մահ-
վան միջև. վիրավոր թոքից արյունը լցվում
էր լանջաթաղանթի մեջ, զարկերակը համար-
յա չէր գործում։ Մենք, բժիշկներս այդպիսի
հիվանդությունների մեծ փորձ ունենք և
մենք լավ գիտենք, որ այդպիսի րոպեներին
հիվանդից կարելի է լսել միայն երկու ցան-
կություն, որոնք արտահայտվում են մոտա-
վորապես հետևյալ բառերով. «Հանգիստ թո-
ղեք ինձ» կամ՝ «Փրկեցեք ինձ»։ Մինչդեռ
ընկեր Լենինն այդպիսի վիճակում բոլորին
խնդրեց դուրս գալ սենյակից, և մնալով ինձ
հետ մենակ, հարցրեց՝ «Մո՞տ է վախճանը։
Եթե մոտ է, ապա պարզ ասացեք ինձ, որ-
պեսզի որոշ գործեր կիսատ չմնան»։ Այդպի-
սով Լենինը հիվանդության ծանր պահին,
պայքարելով կյանքի ու մահվան միջև, վիթ-
խարի կամքի ուժով կարողացավ խեղդել իր
մեջ կյանքի բնազդը, որը սովորաբար բոլոր
հիվանդներին դրդում է արտահայտել միան-
գամայն այլ, զուտ անձնական բնույթի ցան-
կություններ»։
1923 թվականի աշնանը Վլադիմիր Իլյիչին
թույլատրեցին թերթեր կարդալ, նա սկսեց
ձախ ձեռքով գրելու վարժություններ կատա-



րել։ Նա աշխույժ և ուրախ էր լինում, իրեն
զգում էր այն աստիճան լավ, որ հոկտեմբե-
րի 19-ին զբոսանքի դուրս ելած ժամանակ
բոլորի համար անսպասելի կերպով նստեց
ավտոմոբիլ և շոֆերին կարգադրեց իրեն
տանել Մոսկվա։ Քույրը՝ Մարիա Իլյինիչնան,
որ ուղեկցում էր Լենինին, կատակով ասաց՝
«Վոլոդյա, քեզ Կրեմլ չեն թողնի։ Դու անցա-
գիր չունես»։
...Եվ ահա բացվում է Մոսկվայի հրաշա-
գեղ տեսարանը։ Վլադիմիր Իլյիչը ցնծության
մեջ է։ Նա ուղղակի չի կարողանում հան-
գիստ նստել տեղում, և կարգադրում է մե-
քենան քշել ավելի արագ։ Հասնում են
Կրեմլին։ Պահակը ստուգում է անցագրերը։
Իլյիչը կուչ էր եկել ավտոմոբիլի անկյունում։
Պահակը ավելի է մոտենում, որպեսզի տես-
նի, թե ո՞վ է այդ ուղևորը, որ անցագիր
չի ներկայացնում։ Նայում է և պատկառան-
քով հետ քաշվում։ Նրա դեմքին կա և՛ զար-
մանք, և՛ հիացմունք ու հրճվանք— վերջա-
պես եկավ նա, ում երկար ժամանակ սպա-
սում էին...
Իլյիչը խորամանկորեն ժպտում է, նայե-
լով Մարիա Իլյինիչնային, և նրա ժպիտի մեջ
կարելի է կարդալ՝ «Հապա ասում էիր ներս
չե՞ն թողնի»։

Լենինը մտնում է իր բնակարանը, դիտում նկարների դահլիճը, իր առանձնասենյակը, իջնում է աստիճաններից, նստում մեքենա, ապա այցելում է Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը և վերադառնում Գորկի։ Այդ ուղևորությունը տևում է երկու ժամ, և դա Վլադիմիր Իլյիչի վերջին ուղևորությունն էր Մոսկվա։

1923 թվականի նոյեմբերի 2-ին Գորկայում Վլադիմիր Իլյիչին այցելեց Գլուխովսկի ֆաբրիկայի բանվորների դելեգացիան։ Նրանք Լենինի տնակին կից եղած ջերմոցի համար բերել էին 18 բալենի։ Իրենց նամակի մեջ բանվորները գրում էին. «Ձեր այգում տնկվող այս բալենիները թող ձեզ բերեն շուտափույթ առողջացում»։

«Մեզ առաջնորդեցին ընդունարանը,— գրում է բանվորուհի Խոլոդովան։— Երկու րոպեից հետո դռների հետևում լսեցինք Մարիա Իլյինիչնայի ձայնը՝ «Վոլոդյա՛, քեզ մոտ հյուրեր են եկել»։ Դուռը բացվեց և ժպտալով մեզ ընդառաջ եկավ Իլյիչը։ Նրան հետևում էր սանիտարը։ Իլյիչի գլխին, ինչպես միշտ, նրա սովորական կեպկան էր, որով ես նրան շատ անգամ էի տեսել։ Մոտենալով մեզ, Իլյիչը ձախ ձեռքով հանեց կեպկան, դրեց աջ ձեռքը, և ապա ձախ ձեռքով



բարևեց մեզ։ Մենք ուրախությունից շփոթվեցինք և երեխայի նման հրճվում էինք։

Մենք Իլյիչին տվեցինք գործարանային վարչության հասցեն և ողջույնի մի քանի խոսք հաղորդեցինք մեր տեղական կազմակերպությունների կողմից։ Մնալով Իլյիչի մոտ մի հինգ րոպե, հրաժեշտի ժամանակ բոլորս համբուրվեցինք նրա հետ։ Վերջինը հրաժեշտ տվեց վաթսունամյա բանվոր Կուզնեցովը։ Երկու րոպեի չափ նրանք մնացին միմյանց գրկած։ Իսկ ծերունի Կուզնեցովը արտասուքից խեղդվող ձայնով կրկնում էր «Ես դարբին եմ, Վլադիմիր Իլյիչ, ես դարբին եմ, մենք կկռենք ու կկոփենք քո բոլոր ծրագրերը»։ Այդ հուզիչ հանդիպումը բանվորների վերջին հանդիպումն էր իրենց առաջնորդի հետ։

Նադեժդա Կոնստանտինովնա Կրուպսկայան պատմում էր. «Իլյիչի կյանքի վերջին ամիսներին նրա ցանկությամբ ես նրա համար կարդում էի գեղարվեստական գրականություն, և սովորաբար երեկոները։ Կարդում էի Շչեդրինից, Գորկու «Իմ համալսարանները»։ Բացի այդ, նա սիրում էր լսել բանաստեղծություններ։ Մահից երկու օր առաջ ես երեկոյան նրա համար կարդացի Ջեկ Լոնդոնի պատմվածքները»։

1924 թվականի հունվարի 21-ին, երեկոյան ժամը 6-ին սկսվեց հիվանդության սուր նոպան, և երեկոյան ժամը 6-ից 50 րոպե անց Վլադիմիր Իլյիչը մահացավ։

Ամբողջ աշխարհի բանվոր դասակարգը մեծագույն վշտով լսեց Լենինի մահվան լուրը։ Լենինի թաղման օրը միջազգային պրոլետարիատը հայտարարեց բոլոր աշխատանքների դադար 5 րոպեյով— ընդհատվեց աշխատանքը ֆաբրիկաներում և գործարաններում, կանգ առան ավտոմոբիլները, տրամվայներն ու գնացքները, իսկ ուղեկցորդները վագոնից-վագոն անցնելով, ասում էին՝ «Խնդրում եմ ոտքի կանգնեք— մեռել է Լենինը»,— և ուղևորները ոտքի էին կանգնում։

1924 թվականի հունվարի 26-ին Սովետների Համամիութենական II համագումարի սգո նիստում Ստալինը բոլշևիկների պարտիայի անունից երդում տվեց՝ անաղարտ պահպանել և պատվով կատարել Լենինի պատգամները։ Բոլշևիկների պարտիան ընկեր Ստալինի ղեկավարությամբ կատարել և կատարում է Լենինի պատգամները։

***

Մոսկվայի Լենինի անվան թանգարանում



կարելի է տեսնել բազմաթիվ հուզիչ փաստաթղթեր, որոնք արտացոլում են Վլադիմիր Իլյիչի կյանքը և ռևոլյուցիոն գործունեությունը, ժողովրդի մեծ սերը դեպի իր առաջնորդն ու ուսուցիչը։

Ահա մի հուզիչ փաստաթուղթ. 1919 թվականի ձմեռը Սուդոգոդի գավառից Լենինի մոտ էր եկել մի գյուղացի։ Նրա գալուց քիչ առաջ, Լենինը, որ առհասարակ սիրում էր իր սենյակը լավ օդափոխել, բաց էր արել օդանցքը։ Գյուղացին մտնում է Վլադիմիր Իլյիչի մոտ, պատմում նրան գյուղական գործերի մասին և գնում։ Վերադառնալով հայրենի գյուղը, նա իր համագյուղացիներին հայտնում է՝ «Բայց գիտե՞ք, Վլադիմիր Իլյիչի առանձնասենյակում ցո՜ւրտ էր»։ Եվ ահա մենք Թանգարանում կարդում ենք գյուղացիների որոշումը, որ նրանք հասցեագրել էին կառավարությանը.

«Գործկոմի միջոցներից ընկեր Լենինի համար ուղարկել մեկ վագոն փայտ, իսկ անհրաժեշտության դեպքում մեր վառարանագործի ձեռքով դնել թիթեղյա վառարան»։

Ժողովրդական ստեղծագործության ամենահարուստ նյութերի թվում, որոնք արտացոլում են Լենինի կերպարը, բազմաթիվ նկարների, գորգերի, հախճապակյա իրերի

*թվում Թանգարանում դրված է չուկչաների մի հուզիչ նվերը— ծովացուլի լավ հղկված ոսկրի վրա նուրբ գծերով չուկչաները հմտորեն պատկերել են Լենինին և իրենց։ Նրանք այնպիսի բուռն ցանկություն ունեին տեսնելու Լենինին իրենց մոտ, որ իրենց իղձը պատկերել են իբրև իրողություն— ահա՛, նրանք Լենինին տանում են լավագույն եղջերուներ լծած սահնակով, ահա նրանք Լենինի հետ գնում են որսի։*

*Յուրաքանչյուր ժողովուրդ Թանգարան է բերել իր աշխատանքի մեջ մարմնավորված Լենինի կերպարը։ Լենինի մեծ կերպարը հավիտյան կմնա միլիոնավոր աշխատավորների սրտերում։*

Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ

— ◆ —



# ՀԱՐԱՎՍԼԱՎԻԱ

*Հարավսլավիան բազմազգ երկիր է, գտնըվում է Բալկանյան թերակղզու հյուսիս-արևմըտյան մասում։ Նրա ընդհանուր տարածությունը մոտ 250 հազար քառակուսի կիլոմետր է։ Բնակչությունը (1940 թվականի տվյալներով) կազմում է մոտ 16 միլիոն մարդ։*

*Հին Հարավսլավիան ծնունդ առավ առաջին համաշխարհային պատերազմից հետո։ Այն ստեղծվեց անգլո-ֆրանսիական իմպերիալիստների պլաններով, իբրև հակասովետական, ռեակցիոն ուժերի կենտրոն Բալկաններում։*

*Հարավսլավիայի կազմի մեջ մտցվեցին Սերբիան, Չերնոգորիան, Մակեդոնիայի մի մասը և նախկին Ավստրո-Հունգարական կայսրության սլավոնական հողերը՝ Բոսնիան, Հերցեգովինան, Խորվաթիան ու Սլովենիան։ Հարավսլավիան ստեղծելով, վերսալյան «խաղաղարարները» հաշվի չէին առնում Հարավսլավիայի ժողովուրդների ազգային շահերը։ Նրանք սերբիական բուր-*

ժուազիային [illegible] իրավաբանական իրավունքներ՝ [illegible] և ազգային ճնշման ենթարկելու մոտավորապես 9 միլիոն ոչ-սերբ բնակչությանը։

Մյուս կողմից սլովենների ավելի քան 25 տոկոսը և խորվաթական ժողովրդի մի զգալի մասը մնացին ստեղծված պետության սահմաններից դուրս (Յուլիյան Կրաինան միացվեց Իտալիային, իսկ Սլովենյան Կարինտիան մնաց Ավստրիայի սահմաններում)։

Իր պետական կառուցվածքով Հարավսլավիան Կարա-Գեորգիևիչների սերբական դինաստիայի կոնստիտուցիոն միապետություն էր։

Հարավսլավիայի կազմավորման այդպիսի ուղին հասցրեց այն բանին, որ նրա գոյության ամբողջ ժամանակաշրջանում ազգային հարցը (էլ չենք խոսում բնակչության քաղաքական իրավազրկության ու տնտեսական ճնշման մասին) ներքաղաքական հակասությունների մշտական աղբյուր էր հանդիսանում։

Ազգային ճնշման քաղաքականությունը հանդիսացավ այն պատճառներից մեկը, որ հասցրեց 1941 թվականի ապրիլյան կատաստրոֆային, երբ գերմանա-ֆաշիստական բանակը երկու շաբաթվա ընթացքում օկուպաց-



րեց Հարավսլավիան։ Հարավսլավական կառավարությունը Պյոտր թագավորի հետ միասին փախավ արտասահման, բախտի քմահաճույքին թողնելով ժողովրդին ու երկիրը։

Զավթելով Հարավսլավիան, ֆաշիստական օկուպանտները այն բաժանեցին առանձին մասերի, վախենալով հարավսլավական բոլոր ժողովուրդների միավորումից։ Զավթիչները վարում էին մեկ ժողովրդին մյուսի դեմ հրահրելու քաղաքականություն։

Օկուպացիայի ժամանակաշրջանում Հարավսլավիայի բոլոր նախկին քաղաքական պարտիաները կատարելապես սնանկացան։ Ժողովրդի հետ և ժողովրդի գլուխ կանգնած մնաց միայն կոմունիստական պարտիան, որը գտավ ուժեր ու հնարավորություններ՝ կազմակերպելու և գլխավորելու համար լայն մասսաների պայքարը հանուն երկրի ազատագրման և նոր, ժողովրդական Հարավսլավիայի ստեղծման։

Կոմունիստական պարտիան կարողացավ համախմբել բոլոր առաջադիմական ուժերին, անկախ պարտիական, ազգային և կրոնական պատկանելությունից, ստեղծելով միասնական մասսայական քաղաքական մի կազմակերպություն՝ Հարավսլավիայի ժողովրդական ճակատը, որը ղեկավարում էր Հա-

րավսլավական ժողովրդի ամբողջ զինված պայքարը պատերազմի ընթացքում և այժմ էլ ղեկավարում է երկրի ամբողջ հասարակական-քաղաքական ու տնտեսական կյանքը:

Ժողովրդական ճակատի կազմակերպիչը և առաջատար ուժն է Հարավսլավիայի կոմունիստական պարտիան, որին գլխավորում է լեգենդար զորավար, հարավսլավական ժողովրդի հավատարիմ զավակ մարշալ Տիտոն:

***

Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ հարավսլավական ժողովուրդը չորս տարուց ավելի պայքարում էր հանուն իր ազատագրման, հանուն ազատ դեմոկրատական ֆեդերատիվ պետության ստեղծման: Հաղթահարելով հսկայական դժվարություններ, Հարավսլավական ժողովրդական-ազատագրական բանակը, Սովետական Բանակի օգնությամբ, իր երկիրը մաքրեց ֆաշիստական օկուպանտներից և Նեդիչի, Պավելիչի, Միխայլովիչի տիպի դավաճաններից ու ժողովրդի այլ թշնամիներից:

Ժողովրդական- ազատագրական պատերազմի պայմաններում Հարավսլավիայում



տեղի ունեցան դեմոկրատական խոր վերափոխումներ, որոնք ապահովեցին երկրի քաղաքական ու տնտեսական դրության արմա տական փոփոխումը: Հին, թագավորական Հարավսլավիայի փոխարեն ստեղծվել է ազատ պետություն, որի ժողովուրդներն իրենց առանձնահատուկ ուղիներով դնում են սոցիալիստական շինարարության հիմքերը:

Դեռևս պատերազմի ժամանակ, 1943 թըվականի նոյեմբերին, բոսնիական Յայցե քաղաքում Ժողովրդական Ազատագրության Հակաֆաշիստական Վեչեի երկրորդ սեսիան որոշում ընդունեց ֆեդերատիվ պետություն կազմելու մասին և ստեղծեց նոր Հարավսլավիայի ժամանակավոր կառավարություն՝ մարշալ Տիտոյի գլխավորությամբ: Հակաֆաշիստական Վեչեն Կարա-Գեորգիևիչների դինաստիային արգելեց երկիր վերադառնալ:

1945 թվականի նոյեմբերին, չնայած ներքին և արտաքին ռեակցիայի կատաղի պայքարին, որի նպատակն էր վիժեցնել նոյեմբերի 11-ին նշանակված ընտրությունները, Ժողովրդական ճակատի կառավարությունը նշանակված ժամկետին անցկացրեց Հիմնադիր ժողովի ընտրությունները: Ժողովրդական ճակատը բացարձակ հաղթանակ տարավ:

Քվեարկությանը մասնակցած ընտրողների 95 տոկոսը ձայն տվեց Ժողովրդական ճակատի թեկնածուների օգտին։

Հակաֆաշիստական Վեչեի երկրորդ սեսիայի որոշումից ուղիղ երկու տարի հետո, 1945 թվականի նոյեմբերի 29-ին կայացավ Հիմնադիր ժողովի առաջին նիստը, որը միաձայն դեկլարացիա ընդունեց միապետությունը լիկվիդացնելու և Հարավսլավական ռեսպուբլիկա հռչակելու մասին։

1945 թվականի դեկտեմբերի 3-ին հրապարակվեց Հարավսլավական կոնստիտուցիայի նախագիծը, համաժողովրդական քննարկման համար։

1946 թվականի հունվարի 31-ին Նարոդնայա Սկուպշչինայի—Հարավսլավիայի պետական իշխանության գերագույն օրգանի—երկու պալատների համատեղ նիստում միաձայն ընդունվեց նոր կոնստիտուցիան։ Ռեսպուբլիկայի հռչակումով և նոր կոնստիտուցիայի ընդունումով ավարտվեց իր ազատության և անկախության համար հարավսլավական ժողովրդի մղած պայքարի երկարատև ժամանակաշրջանը։

Հարավսլավիան ազատագրված երկրների թվում առաջինն ընդունեց դեմոկրատական կոնստիտուցիան, որն օրենսդրական կարգով



ամրապնդեց երկրում տեղի ունեցած փոփոխությունները։

Նոր կոնստիտուցիայի համաձայն Հարավսլավիան հանդիսանում է ֆեդերատիվ ժողովրդական ռեսպուբլիկա, իրավահավասար ժողովուրդների միավորում։

Կոնստիտուցիայի մեջ մատնանշվում է, որ Հարավսլավիայի Ֆեդերատիվ ժողովրդական ռեսպուբլիկան կազմված է Սերբիայի, Խորվաթիայի, Սլովենիայի, Բոսնիայի ու Հերցեգովինայի, Մակեդոնիայի, Չերնոգորիայի ժողովրդական ռեսպուբլիկաներից։ Ֆեդերատիվ պետության ստեղծումով իրականացվեցին Հարավսլավիայի ժողովուրդների դարավոր իղձերը։ Ֆեդերատիվ պետությունը նրանց հնարավորություն տվեց իրենց բոլոր ուժերը միավորել հիտլերյան Գերմանիայի դեմ մղված պատերազմի հետևանքով ավերված տնտեսությունը վերականգնելու և զարգացնելու համար։ Այսպիսով, նոր Հարավսլավիան հաջողությամբ լուծեց բալկանյան ժողովուրդների համար ամենաբարդ մի հարց՝ ազգային հարցը, ստեղծեց դեմոկրատական ուժեղ պետություն։

«Հարավսլավիայի ժողովուրդները,— ասում էր 1944 թվականին Նարոդնայա Սկուպշչինայի նախագահի ներկայիս տեղակալ

Մոշա Պյադեն,— շատ բան սովորեցին Սովետական Միության ժողովուրդներից, և եթե ընկեր Ստալինը կարող էր 1921 թվականին ասել, թե ՌՍՖՍՌ-ն աշխարհում միակ երկիրն է, որտեղ հաջողվեց մի ամբողջ շարք ազգերի ու ժողովուրդների խաղաղ համակեցության ու եղբայրական համագործակցության փորձը, ապա մենք կարող ենք այսօր հպարտությամբ ասել, որ Հարավսլավիան աշխարհում այն մյուս երկիրն է, որտեղ այդ փորձը նույնպես հաջողվեց, ըստ որում բնականաբար մենք շատ բանով պարտական ենք Սովետական Միության օրինակին»։

Հարավսլավիայի կոմպարտիայի Կենտկոմի քարտուղար Էդվարդ Կարդելը մի քանի կոմպարտիաների ներկայացուցիչների՝ Լեհաստանում գումարված խորհրդակցությունում իր զեկուցման մեջ կանգ առավ երկրում կատարված վերափոխումների վրա և նշեց Հարավսլավիայի հետագա զարգացման հեռանկարները։

Հարավսլավիայում ստեղծված ժողովրդական դեմոկրատիայի բնույթը որոշող կարևորագույն հատկանիշ է հանդիսանում ժողովրդական լայն մասսաների մասնակցությունը երկրի կառավարման գործում։ Կոնստիտուցիայի մեջ ասված է, որ ամբողջ իշ-



խանությունը Հարավսլավիայում պատկանում է ժողովրդին և սկիզբ է առնում ժողովրդից։ Ինչպես հայտնի է, Հարավսլավական տերիտորիայի ազատագրումը օկուպանտներից, ուղեկցվում էր իշխանությունից բուրժուա-կալվածատիրական վերնախավի հեռացումով, որը պատերազմի ժամանակաշրջանում հնազանդությամբ ծառայում էր օկուպանտներին։

Պատերազմի ընթացքում ժողովրդի միջից երկրի կառավարման ասպարեզ առաջ քաշվեցին նոր ուժեր, որոնք իրենց ցույց տվին օկուպանտների և դավաճանների դեմ մղված պայքարում։ Կենտրոնական և Հարավ-Արևելյան Եվրոպայի երկրներում «իշխանության գլուխ անցան,— մատնանշում է ընկ. Ժդանովը,— բանվորների, գյուղացիների ներկայացուցիչները, պրոգրեսիվ ինտելիգենցիայի ներկայացուցիչները։ Քանի որ բանվոր դասակարգն այստեղ ամենուրեք հանդես բերեց առավելագույն հերոսություն, առավելագույն հետևողականություն և անհաշտություն հակաֆաշիստական պայքարում, անչափ աճեց նրա հեղինակությունն ու ազդեցությունը ժողովրդի մեջ»։

Ամբողջ տեղական իշխանությունը Հարավսլավիայում պատկանում է ժողովրդական

կոմիտեներին, որոնք ծնունդ առան դեռևս պատերազմի ընթացքում, և պատերազմը ավարտվելու պահին արդեն ստեղծված էին երկրի ամբողջ տերիտորիայում։ Պատերազմն ավարտվելուց հետո ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ կատարվեցին իշխանության տեղական օրգանների ընտրությունները։

Ժողովրդական կոմիտեների գործունեության նկատմամբ անմիջական վերահսկողությունը իրականացվում է իրենց ընտրողների առաջ ժողովրդական ներկայացուցիչների պատասխանատվության միջոցով։ Ընտրողներն իրավունք ունեն վերընտրելու ժողովրդական կոմիտեն կամ հետ կանչելու նրա առանձին անդամներին նախքան այն ժամկետի լրանալը, որով նրանք ընտրվել են։ Այսպիսով ժողովրդական կոմիտեները իրենց տերիտորիայում ունեն լիակատար պետական իշխանություն, նրանք կատարում են իրենց ընտրողների կամքը։ Հարավսլավիայի աշխատավոր մասսաները ներկայումս ունեն իսկական ժողովրդական իշխանություն՝ հանձին ժողովրդական կոմիտեների։



***

Հին թագավորական Հարավսլավիան օտարերկրյա կապիտալից կախման մեջ գտնվող հետամնաց մի երկիր էր։ Այնտեղ տնօրինություն էին անում ֆրանսիական, անգլիական, գերմանական և այլ կապիտալիստները։ Բոլոր կարևորագույն արդյունաբերական ձեռնարկությունները, պղնձի, կապարի, ցինկի, անագի յուվագույն հանքերն ու երկրի մյուս բնական հարստությունները գիշատիչ կերպով շահագործվում էին օտարերկրյա կապիտալիստների կողմից։ Այսպես օրինակ Բորեյում (Սերբիա) գտնվող խոշորագույն պղնձահանքերը պատկանում էին ֆրանսիական մի ընկերության։ Կապարի ու ցինկի ամենահարուստ հանքերը պատկանում էին անգլիական կապիտալիստներին, որոնց վերահսկողության տակ էր գտնվում Հարավսլավիայի կապարի ու ցինկի հանույթի 80 տոկոսից ավելին։

Արդեն պատերազմի ժամանակ և հատկապես պատերազմն ավարտվելուց հետո, հարավսլավական կառավարությունը կիրառեց մի շարք տնտեսական վերափոխումներ։ Ամենից առաջ պետք է մատնանշել ագրարային ռեֆորմի կիրառումը, որը հսկայական

նշանակություն ունեցավ Հարավսլավիայի համար իբրև մի երկրի, որտեղ գյուղական բնակչությունը կազմում է մոտ 80 տոկոս։ 1946 թվականին Հարավսլավիայում ագրարային ռեֆորմ կիրառվեց, հետևյալ հիմնական սկզբունքով՝ «Հողը պատկանում է նրան, ով այն մշակում է»։ Ռեֆորմի հետևանքով մոտ մեկ միլիոն հեկտար հող հանձնվեց հողազուրկ ու սակավահող գյուղացիներին։

Այսպիսով հարավսլավական կառավարությունը բավարարեց հարավսլավական գյուղացիության դարավոր իղձերը հողի վերաբերմամբ։ Ագրարային ռեֆորմը ժողովրդական իշխանությունն է՛լ ավելի մոտեցրեց գյուղացիության աշխատավոր մասսաներին և ուժեղ հարված հասցրեց հարավսլավական գյուղի ռեակցիոն տարրերին։

Հարավսլավիայի կոմպարտիայի Կենտկոմի քարտուղար ընկ. Կարդելն իր զեկուցման մեջ մատնանշում է, որ ժողովրդական իշխանության պայմաններում չէր կարելի թույլ տալ, որպեսզի հիմնական տնտեսական աղբյուրները պատկանեին տապալված բուրժուազիային։ Կառավարությունը, մատնանշում է ընկ. Կարդելը, չէր կարող սահմանափակվել միայն ֆեոդալիզմի մնացորդների



ու կապիտալիստական մոնոպոլիաների լիկվիդացումով. նա պետք է կուրս վերցներ անհապաղ լիկվիդացնելու կապիտալիզմը Հարավսլավիայում, պետք է վերցներ սոցիալիզմի կառուցման կուրս։

Դեռ 1944 թվականի նոյեմբերին Հակաֆաշիստական վեչեն օրենք ընդունեց գերմանական ու իտալական կապիտալիստներին, ինչպես նաև օկուպանտների հետ համագործակցած անձանց պատկանող բոլոր արդյունաբերական ձեռնարկությունները բռնագրավելու մասին։ Այդ նույն որոշման համաձայն ժողովրդի սեփականությունն էին դառնում հին Հարավսլավիայի պետական ձեռնարկությունները։

1946 թվականի դեկտեմբերին Հարավսլավիայի Նարոդնայա Սկուպշչինան օրենք ընդունեց խոշոր ու միջին արդյունաբերությունը, տրանսպորտը և մեծածախ առևտուրն ազգայնացնելու մասին։ Այդ ձեռնարկումների հետևանքով ներկայումս բոլոր բանկերը, ամբողջ խոշոր ու միջին արդյունաբերությունը պատկանում է պետությանը։ Մասնավոր կապիտալը մնացել է միայն տեղական նշանակություն ունեցող արդյունաբերության մեջ (մոտ 30 տոկոս) և մանրածախ առևտրի ասպարեզում, սակայն այնտեղ էլ նա պետա-

կան առևտրից ու կոոպերացիայից ավելի թույլ է։

Խոշոր ու միջակ արդյունաբերությունը և երկրի էկոնոմիկայի մյուս կարևորագույն ճյուղերը պետության ձեռքն անցնելը, ինչպես նաև պետության ղեկավար դերը արտաքին ու ներքին առևտրի ասպարեզում, կառավարությանը հնարավորություն ավին ձեռնամուխ լինելու ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանի կենսագործմանը։

Անցյալ տարվա սկզբին Հարավսլավիայի Նարոդնայա Սկուպշչինան հաստատեց երկրի ժողովրդական տնտեսության զարգացման առաջին հնգամյա պլանը, որ ներկայացրել էր կառավարությունը։

Բնութագրելով հնգամյա պլանի բովանդակությունն ու խնդիրները, Հարավսլավիայի կոմպարտիայի Կենտկոմի քարտուղար ընկ. Կարդելը նշեց. «Փաստորեն հնգամյա պլանը կվերափոխի երկիրը և ամուր հիմք կստեղծի մեր սոցիալիստական շինարարության համար։ Կստեղծվեն անհրաժեշտ նյութական նախադրյալներ մեր երկրում կապիտալիզմի մնացորդները վերջնականապես լիկվիդացնելու համար»։

Հնգամյա պլանի հիմնական խնդիրներն են



Հարավսլավիայի ինդուստրիալիզացիան և էլեկտրիֆիկացիան։ Հնգամյա պլանը նախատեսում է մի շարք ձեռնարկումներ երկրի տեխնիկա-տնտեսական հետամնացությունը վերացնելու և այն ինդուստրիալ տեսակետից զարգացած ժողովրդական ռեսպուբլիկա դարձնելու ուղղությամբ։

Չնայած այն հսկայական ավերածություններին, որ օկուպանտները պատճառեցին Հարավսլավիային, հարավսլավական ժողովուրդները հիանալի հաջողություններ են ձեռք բերել իրենց երկրի էկոնոմիկան վերականգնելու և զարգացնելու գործում։ Կապիտալիստական ստրկությունից ազատագրված բանվոր դասակարգը աշխատանքային հերոսության օրինակներ է ցույց տալիս։ Հարավսլավիայի աշխատավորները հսկայական խանդավառությամբ ձեռնամուխ են եղել իրենց առաջին հնգամյա պլանի կենսագործմանը։ 1947 թվականին կառուցվեցին ավելի քան 200 խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ, դրանց թվում Բելգրադի մոտ գտնվող ծանր մեքենաշինության գործարանը։ Երիտասարդության ուժերով արդեն կառուցված են Բրչկո-Բանովիչի և Շամաց-Սարայևո երկաթուղիները։

Աշխարհի բոլոր դեմոկրատական ժողովուրդները հսկայական ուշադրությամբ և սիրով հետևում են հարավսլավական ժողովրդի սքանչելի սխրագործություններին, ժողովուրդ, որն իր երկիրը դարձրել է առաջավոր ժողովրդական ռեսպուբլիկա:

Նոր, դեմոկրատական Հարավսլավիան խաղաղության զորեղ գործոն է Բալկաններում: Հարավսլավական ժողովրդական կառավարությունը, որին գլխավորում է մարշալ Տիտոն, սերտ և բարեկամական հարաբերություններ է հաստատել եղբայրական դեմոկրատական ռեսպուբլիկաների հետ: Դեմոկրատական Հարավսլավիան հատկապես սերտ և բարեկամական հարաբերություններ է պահպանում մեծ Սովետական Միության հետ, որը մեծ ու փոքր ժողովուրդների ազգային անկախության և սուվերենիտետի հետևողական պաշտպանն է:

Կատարելով աշխատավոր մասսաների կամքն ու պահանջները, հարավսլավական կառավարությունը հետևողականորեն և անշեղորեն վարում է այնպիսի արտաքին քաղաքականություն, որի նպատակն է պահպանել ընդհանուր ու արդարացի խաղաղությու-



նը և ժողովուրդների անվտանգությունը: Հենց այն պատճառով, որ դեմոկրատական Հարավսլավիան խաղաղության և ժողովուրդների ազգային ու տնտեսական անկախության համար պայքարող կայուն ու հետևողական մարտիկ է հանդիսանում, նա մշտապես ենթարկվում է կատաղի հարձակումների անգլո-ամերիկյան իմպերիալիստների կողմից:

Հենվելով մեծ Սովետական Միության հետ և նոր դեմոկրատիայի երկրների հետ իր բարեկամության վրա, Հարավսլավիան արժանի հակահարված է տալիս բոլոր ռեակցիոներներին, որոնք ուզում են ձեռք բարձրացնել նրա սուվերենիտետի և ազգային անկախության վրա:

Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ նոր Հարավսլավիան անցում է կատարում կապիտալիզմից դեպի սոցիալիզմը:

Վ. ԼՅՍԱԿՈՎ

## Ի՞ՆՉ ԿԱՐԴԱԼ ԼԵՆԻՆՅԱՆ ՕՐԵՐԻ ԱՌԹԻՎ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Լենինի մասին։ *Հայպետհրատ, 1945 թ.։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում, 1946 թ. փետրվարի 9-ին։ *Հայպետհրատ, 1946 թ.։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի մասին։ *Հայպետհրատ, 1946 թ.։*

ՀԱՄԿ(բ)Պ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ։ Համառոտ դասընթաց։ *Գլուխ 9-րդ, 4-րդ բաժին, էջ 362—370։ Հայպետհրատ, 1946 թ.։*

ԼԵՆԻՆ, ՎԼԱԴԻՄԻՐ ԻԼՅԻՉ։ Կյանքի և գործունեության համառոտ ակնարկ։ *(Ռուսերեն հրատ., 1945 թ.)։*

ԻՈՍԻՖ ՎԻՍՍԱՐԻՈՆՈՎԻՉ ՍՏԱԼԻՆ։ Համառոտ կենսագրություն։ *Գլուխ. 7-րդ։ Հայպետհրատ, 1947 թ.։*



Գ. Ֆ. ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎ.— Մեզ նվիրական է Լենին-Ստալինի մեծ դրոշը։ *Զեկուցում 1947 թ. հունվարի 21-ին, Վ. Ի. Լենինի մահվան 23-րդ տարեդարձին նվիրված սգո հանդիսավոր նիստում։ «Ագիտատորի բլոկնոտ» № 3, 1947 թ.։*

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ.— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 30-ամյակը։ *Զեկուցում Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում, 1947 թ. նոյեմբերի 6-ին։ «Սովետական Հայաստան» № 262, 7 նոյեմբերի, 1947 թ.։*

Ա. Ա. ԺԴԱՆՈՎ.— Միջազգային դրության մասին։ *Զեկուցում մի քանի կոմպարտիաների ներկայացուցիչների ինֆորմացիոն խորհրդակցությունում։ «Սովետական Հայաստան» № 250, 24 հոկտեմբերի, 1947 թ.։*

Գ. ՄԱԼԵՆԿՈՎ.— Ինֆորմացիոն զեկուցում ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի գործունեության մասին։ *«Սովետական Հայաստան» № 291—292, 15 և 16 դեկտեմբերի, 1947 թ.։*

ՍՍՌՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ ԵՎ ՀԱՄԿ(Բ)Պ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՈՐՈ-

ՇՈՒՄԸ դրամական ռեֆորմ անցկացնելու և պարենային ու արդյունաբերական ապրանքների քարտերը վերացնելու մասին: *«Ագիտատորի բլոկնոտ»* № 23, 1947 *թ.*:

---

